# ԷՋՄԻԱԾԻՆ

ԿՐՕՆԱ—ԲԱՐՈՅԱԿԱՆ ԱՄՍԱԹԵՐԹ

ԱՌԱՋԻՆ ՏԱՐԻ, ԹԻՒ 11 ՖՐԵԶՆՕ, ՔԱԼ. ՆՈՅԵՄԲԵՐ, 1918 ՏԱՍԸ ՍԷՆԹ

ԱՌԱՋՆՈՐԴՈՂ

## ԱՄԵՐԻԿԱՀԱՅ ԵԿԵՂԵՑԻՆ

Խիստ փափուկ և շատ կենսական հարց մըն է որ փափաքեցայ նիւթ ընտրել այս անգամ «Էջմիածին»ի առաջնորդող յօդուածին:

Ամերիկահայ Եկեղեցին Ամերիկահայ գաղութին ստացութիւնն է, նոյն ինքն համանուն գաղթականութիւնն է: Բայց նոյն գաղթականութիւնը ի՞նչպէս կ'ըմբռնէ յԱստուածուստ ընդունած իր այդ ժառանգութիւնը, և ի՞նչպէս կը վարուի անոր հետ, խորհրդածութեան արժանի յոյժ կարեւոր խնդիր մըն է: Մեր Եկեղեցիին պատկանող գաղթականութեան թիւը՝ նուազագոյն հաշուով՝ եթէ յիսուն հազար ընդունինք, խիստ փայլուն վիճակ ու բարձր դիրք պիտի ունենար Ան՝ Ամերիկայի նման ազատ, հարուստ ու Քրիստոնեայ երկրի մը մէջ: Մինչդեռ կա՞յ քիչ ու շատ խելահաս մէկը որ չի տեսնէ Անոր աննախանձելի տխո՛ւր վիճակը:

Ամէն ազգի ու համայնքի մէջ տեսակ տեսակ ընկերակցութիւններ կան, որոնց պատկանող անձնիւր անդամ գիտէ թէ ինչ է իր ընկերութեան ծրագիրը և նպատակը և ըստ այնմ կը գործադրէ իր բոլոր յանձնառութիւնները նոյն ընկերութեան նկատմամբ: Այն օրը որ դադրի անկատ թողուլ այդ ծրագրին տրամադրութիւնները, ինքն ալ դադրած կը համարուի նոյն ընկերութեան անդամակցութենէն:

Հայ Եկեղեցին Հայ Քրիստոնեաներէ բաղկացեալ, քսան դարերու կեանք ունեցող այնպիսի հաստատութիւն մըն է, որ վերջին կէս դարու միջոցին Հայ ազգին մէջ առաջ եկող որ և իցէ տեսակ ընկերութենէ վեր է, վեհ է և պատկառելի: Անիկա դարերու իր ապրած կեանքին մէջ քաջաբար կուրծք տուած ու կռուած է իրմէ շատ աւելի զօրաւոր ոյժ ունեցող թշնամիներու դէմ: Զէնքին հետ Խաչը, ցեղին պատմութեան հետ Աւետարանը վերցուցեր ու այնպէս դիմադրեր է պարսկական, յունական և արաբական ահաւոր արշաւանքներուն: Իսրայէլական հաւատք ունեցեր է, թէ Աստուած է որ կ'առաջնորդէ- ինչպէս իր կեանքի նոյնպէս ալ իր պատերազմներուն: Հայ Եկեղեցւոյ սրբազան խորանին վրայ դեռ կը պլպլայ պատրոյգը այդ հաւատքի կանթեղին՝ երբ ամէն ինչ խլուած, կողոպտուած ու փճացուցուած կը կարծուի Մայր Հայրենիքին մէջ: Մօտ է այն օրհնեալ ժամանակը երբ այդ առկայծեալ պատրոյգը պիտի զօրանայ, Սուրբ Էջմիածնի ջախջախուած եղէգան հետ, ու մին իր կենսատու ցոլքերը պիտի տարածէ վերածնեալ ազատ Հայաստանի ամէն կողմերը, միւսը պիտի առաջնորդէ ժողովուրդը ի վայրի դալարւոջ և առ ջուրս հանգստեան բարեկարգեալ Հայ Եկեղեցւոյ:

Հալածանքը և անոր ամենաբիրտ միջոցները երբեք կարող չեն բնաջնջել ու անհետացնել որևէ գաղափար որ ճշմարտութիւն մը կը պարունակէ: Սա ո՛չ կրակին մէջ կը մոխրանայ, ո՛չ խաչին վրայ կը մեռնի և ո՛չ գերեզմանին մէջ կը հողանայ: Եկեղեցւոյ տարած յաղթանակի միջոցներէն մէկն էր իր դէմ մղուած բուռն հալածանքը: Մինչդեռ փորձառութիւնը ցոյց կուտայ որ, սանձարձակ ազատութեան մէջ մարդիկ աւելի շուտ կը

կորսնցնեն այն գաղափարները և խորհուրդները որոնց համար հալածուելու աւելի պատրաստ էին անձնազոհ ըլլալու:

Ամերիկան այն երկիրն է որ աշխարհի ամենէն ազատ մասն է, անոր համար որ, Ամերիկայի կառավարութիւնը ժողովուրդը ինքն է, որ գիտէ յարգել անոր սահմանադրութիւնը և հնազանդիլ իր ընտրած կառավարական պաշտօնէութեան, հետեւաբար հնազանդութիւնը ոչ թէ անձերու, այլ օրէնքին հանդէպ է:

Մեր Եկեղեցւոյ կազմակերպութեան վարչական մասը՝ իր գլխաւոր գծերուն մէջ՝ նման է Ամերիկեան սահմանադրութեան, ուստի կատարելապէս ժողովրդական է: Ժողովուրդը ինքն է Եկեղեցին, իր մասնակցութեամբ կ'ընտրուի Եկեղեցւոյ հոգեւոր իշխանը, Կաթողիկոսը, Եկեղեցւոյ մատակարարական վարչութիւնը ժողովուրդին ձեռքն է բացարձակապէս. ժողովուրդին ընտրութեամբ կը նշանակուին Եկեղեցւոյ պաշտօնեաները: Եկեղեցին այնչափ առաջիններուն կը պատկանի, որչափ վերջիններուն:

Հայ Եկեղեցին իբր կրօնական և ազգային անմրցելի հաստատութիւն, այս դրութեամբ կը կառավարուի նաև Ամերիկայի մէջ: Այժմ բաղդատութեան դիր մեր ժողովուրդին իր գերագոյն հաստատութեան հանդէպ ունեցած յարգանքը, հնազանդութիւնն ու օրինապահութիւնը՝ Ամերիկեան ժողովուրդին իր կառավարութեան հանդէպ ցոյց տուած նոյն պարտականութեանց հետ, և պիտի տեսնես որ տարբերութիւնը այնքան ահագին է, որչափ գիշերուան խաւարը ցերեկուան լոյսէն:

Նախ սա ըսենք որ Եկեղեցի յաճախելուն գըլխաւոր շարժառիթը, աղօթքի գաղափարը, արդէն մեռած է ժողովուրդին մէջ: «Տուն իմ տուն աղօթից կոչեսցի» աւետարանական շեշտը այլ ևս չարձագանգեր անոր կամարներուն տակ, ուր ներկայ եղողներ պարզ հանդիսատեսներ են: Հոն հաճելի նուագ մը և հետաքրքիր քարոզ մը, և բաւական են: Եկեղեցի յաճախողներուն թիւը հազիւ տասը առ հարիւր կարելի է հաշուել: Մարդիկ կան որոնք եկեղեցւոյ անդամ են տարեկան տուրքով մը, բայց անոնք տարին մէկ անգամ միայն, Զատկին, հազիւ կը բարեհաճին այցելել հոն: Օրինականին մէջ ժողովուրդին սեփականութիւնը եղող այդ սրբազան հաստատութիւնը, գործնականին մէջ ընաւ չի քաջալերուիր, չի զօրանար իր հակառակորդներուն, իր կեղծարար թշնամիներուն դէմ. ան կը մնայ միշտ աղքատ, շատ անգամ իր ընթացիկ ծախքերն անգամ հոգալու անկարող: Արժ-բաղիր զաւակներ ունի այս Եկեղեցին, որոնք իր գոյութիւնը և օգտակար դերը կը ջատագովեն իրենց թերթերուն մէջ հանապազ: Մտաւորականներէ, բժիշկներէ ու փաստաբաններէ նոյնը կը լսենք մենք յաճախ, ընչեղ դասակարգը, ո՛հ, Եկեղեցին, անոր բարեկամն ըլլալ կը կարծուի բայց ո՞վ տեսած է անոնցմէ մէկը, որ բարեպաշտիկ խորհուրդներով ու կրօնական զգացումներով եկեղեցի յաճախէ և քրիստոնէական պարտականութիւն մը կատարէ: Մեղա՛յ . . . :

Սակայն անոնք պատրաստ էին նախաձեռնարկ ըլլալ, միացնել իրենց ուժերն ու խորհուրդները, զօրեղ կերպով կազմակերպուիլ, նիւթական ու բարոյական ամեն միջոց առեղծել ու՝ ոչ միայն փառաւոր եկեղեցիներ շինել, այլ և աւելին, փառաւոր եկեղեցականներ պատրաստել: Պատշաճ է հոս ըսել թէ փառաւոր ժողովուրդէն միայն առաջ կուգայ փառաւոր եկեղեցականը: Ու այս կարեւոր է նաև տոհմային դաստիարակութիւն, որուն առջեւ միջավայրը թէև դժուարութիւններ կը յարուցանէ, բայց անկարելի չըներ: Կամքը զօրաւոր արեւ մըն է, որուն դիմացը ցնդած ամեն սառոյցներ կը հալին և կ'ոչնչանան, կանուխ կամ անագան: Ամերիկայի մէջ հազուագիւտ են մեր եկեղեցականները, ա՛լ աւելի հազուագիւտ են իսկական արժանաւորները, որոնք այս հողին վրայ պատրաստուած ըլլալով, զուրկ են արդիւնաբեր ծառայութեան յարմարութենէն: Երբ մենք հոս դաստիարակուած, բարձր մարդ ու իմացականութեան տէր եկեղեցականներ ունենայինք, ազգային շատ աւելի պատուաւոր պիտի ներկայանայինք յաչս Ամերիկեան կառավարութեան և ժողովուրդին: Ամերիկեան Հայ Եկեղեցին վտանգի տակ է ներկայ ընթացքով: Արարատի ստորոտէն մեր Վեհափառ Հայրապետը դժուար կրնայ ազդել մինչև հոս, մանաւանդ երբ այժմ քաղաքական պատճառներով կարելի չէ հաղորդակցիլ իրեն հետ:

Անոնք որ կ'ընդունին թէ Եկեղեցին հաստատութիւն մըն է մեր կեանքն ու հոգին առաջնորդող, և մեր ազգային գոյութիւնը պաշտպանող, պէտք է կազմակերպուին և գոհեն այսօր. վաղը շատ ուշ է: Եկեղեցւոյ պէտքը ջատագովողներ մինչև որ իրենց սեփական ստացուածքին պէս չի նային անոր, ինչպէս կը նային իրենց տուներն ու այգիին, և անոնցմէ աւելի չի նկատեն զԱյն, չեն կարող փրկել վերահաս վտանգէն:

Ամերիկահայ ներկայ Առաջնորդութիւնը իր բոլոր ուժերով շատ խոհեմ ու շատ բարեացակամ բժիշկ մը կրնայ ընդունիլ, բայց ինք միայնակ ատակ չէ Եկեղեցւոյ սրտին վրայ բացուիլ սկսած

վէրքը բուժելու և արժանաւոր բարձրութեանը հասցնելու: Ժողովուրդը պէտք է սթափի, կազմակերպուի և թև ու թիկունք ըլլայ անոր: Ժողովուրդինն է Եկեղեցին. ան է որ կը շինէ կամ կը քանդէ Ամերիկահայ Եկեղեցին:

Չենք կարող վերջացնել այս յօդուածը՝ առանց մատնանիշ ընելու մի ուրիշ պարագայ: Եկեղեցական խնդիրներու մէջ մեր ժողովուրդին տրուած այսքան լայն ազատութիւնը սկսած է չարաչար գործածուիլ ոմանց կողմանէ: Կուսակցական յայտնի ոտնձգութիւնք սկսած են «իրրև ըդցրեան խարբալել գնա»: Ալ գաղտնիք մը չէ, որ քաղաքական կուսակցութիւնք կը սիրեն ծառայեցնել զԱյն իրենց շահերուն: Մարդիկ որոնք չեն հաւատար կրօնի և ոխերիմ թշնամիներ են անով տրուած դաստիարակութեան, որոնք կը հեգնեն ու կը ծաղրեն Եկեղեցին ու անոր բեմէն քարոզուած սրբազան սկզբունքները, որոնք Եկեղեցւոյ մէջ հոգևոր պաշտամունք պիտի կատարենք ըսելով՝ կոնծարանութեան սեղան կը պատրաստեն հոն զանիւակ, որոնց համար Քրիստոնէական բոլոր հաւատալիքները և սրբութիւնները մտացածին բաներ են, Աւետարանի աւեղերական հրաշալի բարոյականը «Ազատ սէր»ի հրէշաբանութեան քով ոչնչութիւն է, ինչո՞ւ կը միջամտեն ասոնք Եկեղեցւոյ գործերուն, ինչո՞ւ կ՚ուզեն վարչական ղէկը իրենք առնձնել: Պատճառը գաղտնիք մը չէ:

## ԵՊԻՍԿՈՊՈՍԱԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ —

Գեր. Տ. Բարգէն Եպիսկոպոս Կիւլէսէրեան որ միջին նահանգները կը ճամբորդէր, Սիաթըլ հասած է, և խոստացած է Ֆրէզնօ այցելել ամսոյս սկիզբները:

—Պատ. Հոգաբարձութիւնը ծախեց հին այրած եկեղեցւոյ գետինը, 2·300 տոլ. կանխիկ դրամով:

—Ֆաուլըրի Ս. Գրիգոր Լուսաւորիչ Եկեղեցւոյ հովիւ Արժ. Տէր Մելքիսեդեկ քահանայ, ձեռնարկած է տեղւոյն մէջ Եկեղեցասէր Տիկնանց Միութիւն մը հաստատելու: Փափաքելի է ու Ֆաուլըրի բոլոր հայ տիկինները հաւաքուին Տէր Հօր շուրջ՝ ոյժ տալ և իրականացնելու համար այդ խիստ գնահատելի ձեռնարկը:

—Փաստաբան Պ. Աստուր Աստըքըլեան ամսոյս սկիզբէն քաղաքս փոխադրուած է Լօս Անճէլըսէն: Պ. Աստուրի տեղափոխութիւնը մեծ զրկում մըն է Լօս Անճէլըսի Հայութեան համար, ուր նա իր աշխոյժ և գործունեայ կեանքով հանրածանօթ մի դէմք դարձած էր:

## ՆԱԽԿԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԻ ԱՐԱՐՔՆԵՐՈՒՆ ԴԷՄ

Ամերիկահայոց երբեմնի առաջնորդին կողմանէ շրջաբերական հրաւիրագրեր ղրկուած էին Եկեղեցւոյս հովուին և Պատ. Հոգաբարձութեան, որպէս զի իրենք կամ իրենց ներկայացուցիչները ներկայ ըլլան Հոկտ. 20ին Փրովիտէնս գումարելի «Երեսփոխանական Ժողով»ի մը: Պատ. Հոգաբարձութիւնը իր կողմանէ հարկ եղած օրինական դիտողութիւնով՝ մերժողական պատասխան ղրկած ըլլալով, Եկեղեցւոյս Հովիւն ալ Առաջնորդական Տեղապահ Գեր. Տ. Շահէ Ծ. Վարդապետին գրելով բողոքեց նախկին առաջնորդի ծանրակշիռ կերպով ապօրինի արարքներուն դէմ:

## ՍՊԱՆԻԱԿԱՆ ԻՆՖԼՈՒԷՆԶԱ

Այս թուով մենք չենք կարող հրատարակել մեր հիւանդներուն ցանկը. բաւական շատ են անոնք որոնք ընդունեցին անախորժ այցելութիւնը այդ խենթակոչ հիւրին, որուն անունն է տաղրուս վերնագիրը, որ մեր ծանօթ հարբուխն է, որ երես չունի. դուռնէն փախցունես՝ պատուհանէն կը մանէ, իր ազդեցութիւնը այնքան տիրական է որ փակել տուաւ, ինչպէս շատ տեղեր, այնպէս ալ Ֆրէզնոյի բոլոր եկեղեցիները: Բայց ինք ի շնէ չար ըլլալուն համար, իր ընկեր չար սըլունին բան չըրաւ. ու սըլունները բաց են:

Քաղաքիս բազմամարդութեան ու հիւանդութեան տարածմանը բաղդատութեամբ, մահերը քիչ են բարեբաղդաբար: Մեր ժողովուրդէն շատեր անվտանգ անցուցին հիւանդութիւնը. ցաւով հազիւ երեք մահեր պատահեցան:

Զգուշական միջոցներն են՝ մաքրութիւն, լաւ սնունդ, ներքին գործարանական կանոնաւորութիւն և գիշերային հանգիստ քուն: Եւ ի վեր քան զամենայն՝ աղօթք առ Ամենայնն յԱմենայնի, հաւատալով որ Նա՝ Աստուած միայն կրնայ փրկել զաշխարհ պատուհասի և համաճարակներու արհաւիրքներէն:

Լօս Անճէլըսի Հայերն ալ բաւական ծանր կերպով կը տառապին այս համաճարակէն, և կը տեղեկանանք թէ բաւական մահեր պատահած են անոնց մէջ:

# ETCHMIADZIN

A RELIGIOUS MONTHLY PAPER

PUBLISHED BY

REV. V. V. KASPARIAN

P. O. Box 290 Fresno, Cal.

SUBSCRIPTION PRICE $1.00 PER YEAR

Entered at the postoffice at Fresno as second class mail matter

VOL I, NO. 11 NOV. 1918 PRICE 10 CENTS



## ՎԵՀ. ԿԱԹՈՂԻԿՈՍԻՆ ԿՈՆԴԱԿԸ

Ռուսիա գտնուող Հայ Ազգային կալուածներու

Գրաւման մասին

* * *

(Շարունակութիւն և վերջ)

Առաւել ես ծանրանայ յաչս Մեր անօրէնութիւնդ այդ, քանզի ըստ նուիրական կարգաց, որ հիմն Եկեղեցւոյս Մերոյ, հասք և եկամուտ սեփականութեանցդ այդոցիկ ի կրթութիւն և ի դաստիարակութիւն մանկանց Ս. Եկեղեցւոյս գնան. այդ աղբիւր մշտական կան կապեալք դպրոցք Մեր ի սորին ծխականաց ցԴպրանոցս և ց Ճեմարան Մեր Հոգևոր ընդ հովանեաւ որոյ կրթեցան և կրթին մանկունք Մեր՝ եթէ ի գաւառաց Կովկասեան շրջանի, եթէ ի հեռաւոր վայրից Եւրոպիոյ, Ասիոյ և Ամերիկայի առանց խտրութեան իրիք: Ի հասիցդ են մատակարարութիւնք այլ և այլ հաստատութեանց կրթարանի և լուսաւորութեան Ազգիս, պահպանութիւն տպարանի Մայր Աթոռոյս, թանգարանի և ձեռագրոյն մատենադարանի նորին, յոր որպէս առ ճրագ լուսատու, ո՛չ սակաւք են, որ գան յուսումնասիրութիւն ի գիտնոց: Ի ձեռն աղբերացդ են, որ պահպանի եկեղեցականութիւն Ս. Եկեղեցւոյս ի Գիրս Նորին ցյետին սպասաւոր, և եթէ խցեսցին աղբիւրքն, ապաքէն և զմահ հաստատութեան հաւատոցս ունիմք տեսանել ի մօտոյ:

Զայս ամենայն յանկն որդւոցդ Մերոյ խօսեցեալ՝ գամք և զՁեզ կոչել ի պաշտպանութիւն մեծի իրաւանց Ս. Եկեղեցւոյս: Եթէ տակաւին Տէր շնորհեսցէ մեզ կեանս, ունիմք բարձրացուցանել զբարբառ բողոքանաց Մերոց ցորչափ ունիմք կար, որպէս ոչ ամենեքին զանգատեցաք բողոք բառնալ ի ձեռն հեռագրական կոչման առ արարեալ անդամոց Կովկասեան Յանձնակատար իշխանութեան հանել խոպա զայդ խնդիր յօրակարգէ խորհրդակցութեան իւրոյ, ցգումարումն Սահմանադիր Ժողովոյ, որում և ունիմք առնել առաջի զհայեցակէտ Մեր ի պաշտպանութիւն իրաւանց Ս. Եկեղեցւոյս, որ և իրաւունք համայն Ժողովրդեան և ազգի Իմոյ: Այլ զի գիտասցէ աշխարհ բովանդակ, եթէ կապտումն իրաւանցդ կապտումն համայնից ժողովրդեան Իմոյ իրաւանց գիտեմք, զՁեզ ես յորդորեմք բառնալ զձայն բողոքանաց առ որս անկ է և կալ պաշտպան իրաւանց արտօնութեանց և անկապուտ սեփականութեան համայնից, որ ի դժնդակ ժամանակս իսկ 1903 և 1904 թուականաց ոչինչ ամենեքին զանգիտացեալ ժողովրդեան Իմոյ զծանրութենէ հալածանաց, տառապանաց և վշտից, եկն եկաց որպէս մի մարմին և մի զանգուած ամբողջական ոգւոյն ժողովուրդ Հայոց և ի գին իսկ արեան որդւոց իւրոց յետս կոչեաց զառացուած իւր սեփական:

Եւ արդ, եթէ ժամանակս բռնութեան և հալածանաց Ազգն Հայոց ոչ ամենեքին զանգատեաց ծառանալ ընդդէմ բռնութեան ի պաշտպանութիւն իրաւանց իւրոց, միթէ՞ յաւուրս ազատութեան, ինքնորիշ կազմութեան, չելանիցէ մէն մի անհատ ժողովրդեան Իմոյ դէմ դնել անիրաւի որոշման և ասել ի ձայն բարձր, եթէ «Մի՛ ոք համարձակեսցի բառնալ զսեփականութիւն մեր, զոր ժառանգեցաք և ի պահպանութիւն որոյ ունիմք դնել զկեանս մեր իսկ: —

Ուրախ եմք ի սիրտ և ի հոգի, զի իրաւունք սեփականութեան մերոյ յղբացեաց, զՎրաց ասեմք և զմահմետականաց, կան և մնան անշարժ, որպէս անկն էր և իրաւական: —

Ուրախ եմք նաև զի ազատական ոգի երևեցաւ ի դրացիս մեր, առ Վիրս, որոց զիմացեալ քաջարար պաշտպանեցին զազգային սեփականութիւն իւրեանց եղէկեան, որպէս հանրական գոյից իրաւունք. ո՛չ նուազ քան զնոսա ցուցին արժանիս հարևան մահմետական ժողովուրդ, որ իբրև սկզբունք անյեղլի ետ, մի՛ ամենեքին կոխել զսահմանս կալուածոց կրօնական համայնից սեփականութեան և մի՛ սեփականել և թիզ մի հողոյ ի կայից նոցա, զի այդ ամենայն սրբութիւն համարեցաւ յաչս նոցա, զի Տեառն իւրոյ նուիրական

են կալուածքդ։ Արդ մի՞թէ Հայն առաւել նուազ ունի ցուցանել ոգի առաքելական և զեղ կրօնական քան զգրացիս իւր. մի՞թէ ոգի նորա ունի խոնարհիլ ընդ լծով անիրաւացի որոշման։ Քա՛ւ. գիտեմք և հաւատամք, եթէ գոյ ի յազգի իմում նոյն ոգի առաքինի առաքելութեան և զգացման առ արդարութիւն հայրական սեփականութեան իւրոյ։

Եւ զիա՞րդ կարեմք իսկ հանդուրժել տարապայման վիճակի խոպան կապման իրաւանց ժողովրդեան Իմոյ՝ յոյր ձեռն իսկ վարի կառավարութիւն կալուածոց, հասից, եկամտից և մատակարարութեան նոցա ի սկզբանէ ժամանակաց ցայս օր, և և՛ս առաւել յորն յայնմանէ, երբ հրատարակեցան կոնդակք երջանկայիշատակ նախորդաց Մերոց՝ Տ. Մկրտիչ Ա. Կաթուղիկոսի ի 1906 ամի ի 10 մայիսի և Տ. Մատթէոս Բ. Կաթուղիկոսի ի 1909 ամի, որպէս և ի Մէնջ իսկ 17 ապրիլի 1917 ամի, N. 678, յոր զհամայն ժողովուրդ մեր կոչեմք գալ ի մասնակցութիւն կառավարութեան ամենայն հասից և ունել մասն ի մատակարարութեան այնոցիկ, ի ձեռն Թեմական Խորհրդոց, ընդ Առաջնորդաց իւրեանց։

Կապումն իրաւանցս՝ կապումն արտօնութեանց մէն մի անհատի ազգիս խոստովանիմք Մեք, այս և համայն լրութեան ժողովրդեանս։ Ուստի և մէն մի պաշտօնեայ, իւրաքանչիւր անհատ ժողովրդեան Իմոյ ոչ ամենեին դադարեսցի առանձինն իմն ուժգնութեամբ խօսել և կալ պաշտպան արդար իրաւանց մերոց։

Եւ արդ յուսացեալ յօգնութիւն անձնիւր անհատի և անդամոյ Ս. Եկեղեցւոյս և լրութեան համայն ազգութեանս, եթէ աստ ի սահմանս Կովկասու, եթէ ի Ռուսիա, եթէ յԱրտասահման, ուրանոր անուն Հայութեան հնչի, կամք զօրացեալ ի հաւատ կենդանի, եթէ ձայն բողոքանաց նոցա ունի գալ հասանել Մեզ ի թիկունս, որպէս Պարականանի աւանդից և իրաւանց ազգութեանս, նոյնպէս և ունի բարձրանալ յարդար բողոք ի պաշտպանութիւն արդարն իրաւանց, զի մի՛ ընդ լծով ծառայութեան գայցէ Մայրս Մեր Ս. Եկեղեցի, զի մի՛ ի խաւարի խարխափեսցեն հաստատութիւնք մեր լուսաւորութեան, կրթութեան և դաստիարակութեան։

Մաղթեմք սրտագին կար և զօրութիւն ամենեցունց յայս գործ մեծ և աղօթեմք հասանել ի գլուխ պաշտպանութեան իրաւանց եկելոց առ Մեզ ի նախնեաց մերոց և տալ սերնդեան մերոյ, որ ըզկնի մեր։

Ողջ լերուք զօրացեալ ի Գլուխն հաւատոյ Մերոյ և օրհնեալք ի Մէնջ, Ամէն։

ԳԷՈՐԳ Ե.

Կաթողիկոս Ամենայն Հայոց

Ի 10 Յունուարի 1918 ամի Ըստ Տօմարիս ՌՅԿԷ, Ի Հայրապետութեան Մերոյ Զ. ամի, յԱրարատեան Մ. Աթոռ Ս. Էջմիածնի

Ի Վաղարշապատ. Թ. 44

---

## ՏԱՍԸ ՊԱՏՈՒԻՐԱՆՆԵՐ

1. Կիրակի առաւօտ ժամը ճիշտ 10ին Եկեղեցի գնացէ, ընտանեկան բոլոր պարագաներով, և սպասէ մինչև վերջը։

2. Այնպէս պարկեշտ, քաղաքավար և բարեպաշտ դիրք մ՚ունեցիր, որ հաստատես թէ զԱստուած կը կը տեսնես դէմ յանդիման, ու կը խօսիս Անոր հետ աղօթքով։

3. Խորին ուշադրութեամբ հետևէ ընթերցուածոց և երգեցողութեանց։

4. Մի՛ խօսիր և մի՛ խնդար, ու բոլորտիքդ մի նայիր որ և իցէ պատճառով։

5. Եկեղեցւոյ ճիշտ դրան քով մի՛ կենար, երբ նստարաններուն վրայ քեզի համար տեղ կայ նստելու։

6. Եթէ հետդ պզտիկ ունիս, լաւ հսկէ անոր վրայ և թող մի տար որ քովէդ հեռանայ։

7. Պնակ շրջագայելու ատեն նուէրդ կանխաւ պատրաստէ՝ և անմիջապէս տուր։

8. Հանդերձներդ խիստ պարզ ըլլան, բայց մաքուր և վայելուչ։ Եկեղեցին զարդարանք ցուցադրելու տեղ չէ։

9. Երբ ներսը արարողութիւն կայ, դուրսը դրան առջև մի՛ կենար խօսիլ խնդալու համար, ու որևէ ատեն հոն մի ծխեր ու թքներ։

10. Պահէ միտքդ ու գործադրէ այս պատուէրները, և ահա բարի պիտի ըլլայ քեզի ու քու Եկեղեցիիդ։

## ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ ԳՈՐԾԵՐԷՆ

Առաջնորդարանէն զրկուած ընդարձակ շրջաբերականէ մը կը քաղենք հետեւեալները․

1․ Նկատելով որ Տ․ Արսէն Վրդ․ իր հրաժարեցումէն վերջ 1917 Փետր․ 22 թուակիր «Պաշտօնական Բացատրութիւն» խորագրով ըրած յայտարարութեան մէջ եզրակացուցած և խոստացած էր ըսելով —«Ուստի մեր վերջնական խօսքն այս է թէ . . . . . . Երբ այս ապօրինի ժողովին կողմէ Ամենայն Հայոց Վեհափառ Հայրապետին ուղարկուած բողոքին հետեւանքով, Նորին Սրբութեան կողմէ մեզ հրամայուի ձեռնթափ ըլլալ, առանց առարկութեան պատրաստ ենք հնազանդիլ։»

2․—Նկատելով, որ 1917 Փետրուարին Կեդրոնական Վարչութեան պաշտօնի վրայ մնացող անդամները՝ Փետրուար 28 թուակիր գրութեամբ մը խնդիրը «Վեհափառ Հայրապետին որոշման և բարձր հրամանին յանձնած էին»։

3․ Նկատելով, որ Վեհ․ Հայրապետին որոշումն ու հրամանը պարունակող պաշտօնագիրը մէջտեղ են.

4․ Նկատելով, որ Տ․ Արսէն Վարդապետ հաստատ եկեղեցականութեան և Առաջնորդութեան կոչուած պահուն՝ Սահմ․ օրէնքին և Հայրապետութեան հրամաններուն հնազանդ մնալու ուխտին, և քիչ մը վերը յիշատակեալ իր՝ այս խնդրոյ մասին հրապարակաւ ալ ըրած ԽՈՍՏՄԱՆ ԴՐԺԵԼՈՎ, ՍԱՀՄ․ ՕՐԷՆՔԸ ԵՒ ԿԱԹՈՂԻԿՈՍԱԿԱՆ ՀՐԱՄԱՆԸ Կ'ԱՆԱՐԳԷ ԵՒ ԿԸ ՈՏՆԱԿՈԽԷ․

5 Նկատելով, որ նախկին Առաջնորդը՝ իր պաշտօնավարութեան ամբողջ ընթացքին Ազգ․ Առաջնորդարանի նիւթական մատակարարութիւնը՝ հակառակ Սահմ․ օրինաց ինքն ըրած ըլլալով, օր մը օրանց հաշիւները չէր տուած․ իսկ այժմ ալ գոյքեր և տոմարները յանձնելէ կ'խուսափի և ԿԸ ՋԱՆԱՑ ՄԻԱՆԳԱՄ ԸՆԴ ՄԻՇՏ ԶԵՐԾ ՄՆԱԼ ՀԱՇԻՒ ՏԱԼԷ․

6 Նկատելով, որ Տ․ Արսէն Վրդ․ փոխանակ լսելու Վեհ․ Հայրապետին հրահանգներուն և յարգելու Սահմ․ օրէնքը, ինքզինքը կամովին կ'ենթարկէ «Ամերիկահայ Թեմական գործոց Կարգադիր Ցանձնախումբ» անունով նորելուկ հակասահմանադրական խմբակցութեան մը թելադրութեանց։

7․ Նկատելով, որ Առաջնորդարանի և Կեդր․ Վարչութեան՝ ցայսօր Արսէն Վարդապետի և իր քանի մը համախոհներուն հանդէպ հետեւած մեղմ ու սիրաշահող ընթացքը, Առաջնորդարանի տկարութեան նշան կը համարուի, և ազգին ներկայ տագնապալից և օրհասական շրջանին ահաւոր իրադարձութեանց սիրոյն՝ պահած ներողամտութիւնը կարգ մը անպատասխանատու անհատներու ձեռքը կը ծառայէ Եկեղեցին պառակտելու և Սահմանադրական օրէնքն ու Հայրապետական հեղինակութիւնները յաչս ժողովրդեան վարկաբեկելու և ԵԿԵՂԵՑԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՄՐՑԱԿՑՈՒԹԵԱՆ ԹԱՏՐ ԵՒ ՄՐՑԱՐԱՆ ԴԱՐՁՆԵԼ ՋԱՆԱԼՈՎ․

8․ Նկատելով, վերջապէս, որ Տ․ Արսէն Վարդապետի այս խռովայոյզ ընթացքը, Սահմ․ օրինաց անհնազանդ ոգին և և Վեհ․ Կաթողիկոսի հրամանաց՝ ըմբոստ դիրքը ազգային և եկեղեցական հիմնական շահուց յայտնապէս հակառակ է․ և ԵԿԵՂԵՑՒՈՅ ՄԷՋ ԱՆԻՇԽԱՆԱԿԱՆ ԴՐՈՒԹԻՒՆ ՄԸ ՍՏԵՂԾԵԼՈՒ ԿԸ ՁԳՏԻ․

Ազգային Կեդրոնական Վարչութիւնը իր Դ․րդ լիագումար նիստին մէջ, համաձայն Ամերիկահայ Սահմանադրութեան 12րդ յօդուածին Բ․րդ պարբերութեան, որ կըսէ —

«․ ․ ․ Երբ ոեւէ հոգեւորական կամ աշխարհական պաշտօնէութիւն կայթակղական կամ խռովայոյզ ընթացք մը ունենայ, Առաջնորդը իրաւունք ունի անմիջապէս առժամանակեայ կերպով դադրեցունել զայն իր պաշտօնէն՝ վերջնական որոշումը թողլով ձեռնհաս պատկանեալ ժողովոյ կամ Ամենայն Հայոց Հայրապետին»։

1․ Որոշեց միաձայնութեամբ Տ․ Արսէն Ծ․ Վարդապետ Վեհունին առժամապէս դադրեցուցուած հռչակել Ամերիկահայ թեմերու մէջ պաշտօնավարելու իրաւունքէն՝ ցնոր անօրինութիւն։

2․ Որոշեց այս պարագան շրջաբերական նամակով և մամլոյ միջոցաւ ծանուցանել Հայց․ Եկեղեցւոյ Պաշտ․ Թեմական ժողովոց և Հոգաբարձութեանց և մեր Եկեղեցւոյ ժողովուրդին։

3․—Որոշեց Կեդր․ Վարչութեան կողմէ իրողութիւնները պաշտօնագրով մը տեղեկագրել Ամենայն Հայոց Վեհ․ Հայրապետին։

Կեդրոնական Վարչութեան այս որոշումը ցաւօք սրտի հաղորդելով Հայց․ Եկեղեցւոյ եկեղեցական և աշխարհական պաշտօնէութեան և ժողովուրդին,

Մնամ Աղօթարար

Առաջն․ Տեղապահ Հայոց Ամերիկայի

ՇԱՀԷ Ծ․ ՎԱՐԴ․ ԳԱՍՊԱՐԵԱՆ

Ուստր, 25 Սեպտ․ 1918

## ՍՐՏԱՇԱՐԺ ՈՒ ԽՈՐՀՐԴԱՒՈՐ ԴԷՊՔ ՄԸ

Հալլաւան Մէրկէրիա, կինը Նազլու, երեք անչափահաս աղջիկ զաւակներով, զոհ գացին իրենց տանը մէջէն ծագած հրդեհի մը, Հոկտ. 15ի իրիկուան ժամը 9.30ին ատենները, որուն պատճառը տակաւին կարելի չեղաւ ստուգել: Տարաբախտ արկածեալներուն ածխացած ոսկորները հազիւ կարելի եղաւ հաւաքել, ու բոլորը մէկ դագաղի մէջ ամփոփելով, թաղումը կատարուեցաւ Հոկտ. 20ին, աննախընթաց բազմութեան մը ներկայութեամբ:

Ժամանակին ծանուցեր էինք, բայց անգամ մըն ալ կը յիշեցնենք մեր ժողովուրդին թէ կիրակի օր ննջեցեալ չի թաղուիր: Այս որոշումը տրուած է քաղաքիս բոլոր Եկեղեցեաց Երէցներուն Միութեան ժողովին կողմէն և կը գործադրուի տարիներէ ի վեր:

Երբ նոյն Միութիւնը Հալլաւաններու համար բացառիկ արտօնութիւն տուաւ, պատճառը ոչ միայն անոնց մահուան արտաշարժ պարագան, այլ և այդ օրը՝ համաճարակ հիւանդութեան պատճառով Եկեղեցիները փակ ըլլալով պաշտամունք չի կատարուելն էր:

## ՇՐՋԱԲԵՐԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ԱՌԱՋՆՈՐԴԱՐԱՆԻ

Ա. Ազգային Կեդրոնական Վարչութիւնը իր վերջի նիստին մէջ նկատի առաւ Ամերիկայի Հայաստանեայց Ս. Եկեղեցւոյ թեմերուն մէջ հոգևոր պաշտօնէից անբաւական թիւը, որուն պատճառաւ շատ թեմեր առանց հովիւի և Հոգևոր մխիթարութեան կը մնան: Ներկայիս կը յանձնարարուի մեր Եկեղեցւոյ Պատ. Հոգաբարձութեանց որպէս զի իրենց ուշադրութիւնը դարձնեն այս կենսական հարցին. և եթէ իրենց շրջանակին մէջ կան քահանայ ձեռնադրուելու յարմար ընտրելիներ, հաճին անոնց անունն ու հասցէները հաղորդել Ազգային Առաջնորդարան:

Բ. Կը խնդրուի Հոգևոր հովիւներէ և Պատ. Հոգաբարձութիւններէ, որ 1918 Ապրիլէն մինչև Յուլիս վերջ իրենց թեմերուն մէջ կատարուած մկրտութեանց, պսակներու և թաղմանց արձանագրական ցանկերը և Առաջնորդարանի տուրքի բաժին գումարները փութով ղրկեն Առաջնորդարան:

Ողջունիւ և սիրով մնամ աղօթարար

Առաջն. Տեղապահ Հայոց Ամերիկայի

ՇԱՀԷ Ծ. ՎԱՐԴ. ԳԱՍՊԱՐԵԱՆ

Օգոստ. 25, 1918, Ուստըր, Մէսս.

## ԹԱՌԵԱԿ ՈՍԿԵՂԷՆ ՍԻՒՆԵՐԸ ՄԵՐ ԿԵԱՆՔԻՆ

### ՎԵՐԱԿԱՆԳՆԵԱԼ ՀԱՅԱՍՏԱՆԸ

| | | | |
|---|---|---|---|
| ՀԱՅԿԱԿԱՆ | ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ | ԸՆԴՀԱՆՈՒՐ | ՄԻՈՒԹԻՒՆ |

Այս չորս հրաշալի ոսկի սիւներուն վրայ միայն պիտի հաստատուի վերաշինեալ Հայաստանը և ատոնք են այն նեցուկները որոնցմով կը պաշտպանուին այսօր հարիւր հազարաւոր մեր որբերն ու այրիները:

ԴՈՒՆ ԱՆԴԱ՞Մ ԵՍ ՀԱՅԿԱԿԱՆ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՄԻՈՒԹԵԱՆ:

## ԶԻՆՈՒՈՐՆԵՐԷՆ ԼՈՒՐԵՐ

Գերապատիւ Հայր,

Եօթն ամիսներու մէջ երեք տարբեր քէմբեր փոխադրուած եմ, այժմ կը գտնուիմ ի Քէմփ Ֆըրիմօնթ: Կ'երևի որ յաջորդ քէմբս Սիպերիա պիտի ըլլայ:

Բաւական թուով հիւանդներ կան հոս, բայց հոգածութիւնք և զգուշական միջոցներ յոյժ քաջալերական են:

Հայ կեանքը շատ կարօտցեր եմ: Հայ թերթ շատ քիչ ատեն կ'ստանամ: «Էջմիածին»ը մեր Վահանը կը ղրկէ ինծի:

Անցեալները շատ մը Ֆրէզնոյի զինուորներ մեկնեցան, որոնց մէջ կային 12 Հայեր, մէկը Դաւիթ Սողիկեան:

Խոստանալով նորէն գրել ձեզ

Մնամ յարգանօք

ԵՂԻԱԶԱՐ ՅԱԿՈԲԵԱՆ

* * *

—Զինուոր Արմենակ Ճգնաւորեան Ֆրանսա հասած է, ու յատուկ նամակով մը իր լուսանկարը ղրկած է մեզ, զոր հաճոյքով ընդունեցինք:

## — Տ Օ Ն Ա Ց Ո Յ Ց —

* * *

ՆՈՅԵՄԲԵՐ

2. Շբ. Գկ. Տօն Սրբոց Աւետարանչացն :

3. Կիր. ԴՁ. Ձրդ զկնի խաչին :

9. ԳՁ. Տօն Սրբոց Երկոտասանից վարդապետացն Ռէքէոսի ևն : 3 3 3

10. Կիր. ԳԿ. Էրդ զկնի խաչին : Գիւտ խաչի :

16. Շբ. ԲԿ. Տօն ամենայն Սրբոց, հին եւ նորոց :

17. Կիր. ԳՁ. Ըրդ զկնի խաչին :

23. Շբ. Տօն Սրբոց Հրեշտակապետացն Գաբրիէլի և Միքայէլի, և ամենայն երկնային զօրացն :

24. Կիր. ԲԿ. Թրդ զկնի խաչին :

30. Շբ. ԱԿ. Տօն Սրբոց Առաքելոցն Անդրէի և Փիլիպպոսի :

---

## *Ե Կ Ե Ղ Ե Ց Ա Կ Ա Ն  Լ Ո Ւ Ր Ե Ր*

---

Մահագրութիւն

*Տիկին Բրարիոն Ահարոնեան, Նոյեմբեր* 5

*Տիրան Եօլլիկեան,* 2 *տարեկան, Նոյմ.* 15

*Երեմիա Գրաթլեան,* 40 *տարեկան, Նոյմ.* 16

*Մերկերիտա Հայլաեան, Նոյեմբեր* 16

*Կինը՝ Տիկին Նազլու Հայլաեան, Նոյեմ.* 16

*Դուստրը Վեհանուշ Հայլաեան, Նոյեմբ.* 16

*Դուստրը Արմենուհի Հայլաեան, Նոյեմ.* 16

*Դուստրը Զուարթ Հայլաեան, Նոյեմբ.* 16

*Տիկ. Պատասխան Եօլլիկեան,* 28 *տրկ. Նոյ.* 17.

*Հայկ Զաչուեան,* 26 *տարեկան, Նոյմ.* 17

*Լուսիա Գէորգեան,* 35 *տարեկան, Նոյմ.* 24

* * *

Մկրտութիւն

*Կ. Եղբայրեանի երախան՝ Էլիզա*

## *ՔԱԼԻՖՕՐՆԻԱ ՆՈՐ ԵԿՈՂՆԵՐՈՒՆ*

---

*Արեւելեան նահանգներէն մեծ թուով Հայեր եկած են Քալիֆօրնիա գալ ու հաստատուիլ այս շրջանակին մէջ՝ լսած ըլլալով այգեգործութեան մէջ առաջ եկած յաջողութեան մասին : Մենք չենք գիտեր թէ որչափ ճիշդ է այսպիսիներու ընթացքը, բայց կը փափաքինք գիտնալ անոնց հաստատուած տեղերը ու ծանօթանալ անոնց հետ :*

---

## *ԼՈՒՐ ՏՈՒՐ ԵԿԵՂԵՑԻՈՅ ՀՕՎՈՒԻՆ*

*Երբ տունիդ կամ ծանօթներուդ մէջ հիւանդ կայ :*

*Երբ գիտես թէ բանտարկեալ մը կայ :*

*Երբ գիտես թէ խռովեալներ կան :*

*Երբ գիտես թէ նորեկ կայ :*

*Տեղափոխութեան պարագային՝ նոր հասցէդ :*

Բնակարանի հասցէ՝ 2143 Վէնթուրա ավնիւ,—

--Թէլէֆօն 4138- W—

---



---